## Ուէսթֆալիի տագնապը

Պարէնաւորման միջազգային խորհուրդը յոտնեալս տեղեկագիր մը կազմած է, աշխարհի պարէնաւորման մասին։ Տեղեկագիրը այժմէն կ'արդարացնէ իր անդամներուն,— Անգլիոյ, Մ. Նահանգներուն եւ եւրոպական պետութեանց, որ ուշադրութեամբ տնտեսեն իրենց պարէնաւորման աղբիւրները։ Անգլիան անգամ հարկադրուած է մէկ տարի եւս քաշքշել բաժնեչափի դրութիւնը։ Մասնաւորապէս պակաս կուգան ցորենը, շաքարը եւ ճարպեղէնը որոնց վիճակը դրեթէ տագնապալի կը համարուի։ Տեղեկագիրը կը հերքէ արմտիքի առատութեան մասին տարածուած լուրերը։

★ Գերմանիոյ անգլիական շրջանին ընդհ. հրամանատարը Լոնտոն գնաց, առիպողաբար օգնութիւն խնդրելու համար պարէնաւորման մասին որ անելի մը մատնուած է։ Վարչապետը արտակարգ ժողով մը գումարեց եւ որոշուեցաւ Մ. Նահանգներուն ուշադրութիւնը հրաւիրել Պ. Պէվինի միջոցաւ։ Ամերիկեան շրջանին մէջ, վեց շաբթուան ուտելիք ամբարուած է, մինչ անգլիականին բնակիչները կրնան անօթի մնալ մէկ օրէն միւսը։ Եթէ ամերիկեան շրջանէն 35000 թոն արմտիք — 1 շաբթուան ուտելիք — եւ պալթեան նաւահանգիստներէն 15.000 թոն ցորեն փոխադրուի անգլիական շրջանը, կարելի պիտի ըլլայ կանխել տագնապը, այլապէս կատարեալ աղէտի մը առջեւ պիտի գտնուին։

Նոյեմբեր 11էն նորէն պիտի կրճատուին ճուկի եւ արմտիքի բաժինները։ Օրապահիկը անուանապէս 1550 գոլ է, շնորհիւ գետնախնձորի բաժնին յաւելման, բայց հետզհետէ պիտի պակսի, ձմրան ընթացքին։

### ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՎԱՂՈՒԱՆ ԸՆՏՐՈՒԹԵԱՆՑ առթիւ, ժողովրդականները (M. R. P.) իրենց յայտարարութիւններով բացէ ի բաց պայքար կը մղեն համայնավարներուն դէմ։ Վարչապետը անձամբ կը վարէ այս պայքարը, բացի քաղաքական - գաղափարական տեսակէտներէն — ազատութիւն կամ դիկտատուրա — պայքարին գլխաւոր նիւթերն են հացը, կարագը, միսը, ապրուստի գիները, Փրանքին վիճակը, խաղաղութի՞ւն թէ պատերազմ։ Բոլոր հոսանքներն ալ, ընկերվարականէն մինչեւ ծայրագոյն աջակողմը, զանազան ձեւերով կը մատնանշեն համայնավարական վտանգը։ Պիտի ընտրուին 618 երեսփոխաններ։

250.000 ԲԱՆՈՒՈՐՆԵՐ պէտք է բերուին Ֆրանսա, 1947ին, ըստ ազգ. տնտեսութեան նախարարը, ներգաղթի յանձնաժողովին մէջ։

18 ՄԻԼԻԱՌ ՖՐԱՆՔԻ թղթադրամ աւելցած է վերջին շաբթուան ընթացքին, ընդհ. գումարը բարձրացնելով 696.924 միլիոն ֆրանքի։

ԳԻՆԻԻ ՀԱՄԱՐ 50 միլիոն յաճախորդներ արձանագրուած են, մինչդեռ Ֆրանսայի բնակչութեան թիւն է 40 միլիոն։ Այս խարդախութիւնը երեւան հանած է պարէնաւորման տնօրէն մը։

ՄԱՏՐԻՏԷՆ կը հեռագրեն թէ նոր ձերբակալութիւններ կատարուեցան։ Կառավարութիւնը զեկոյց մը հրատարակեց, հաղորդելով ձերբակալուած գլխաւոր համայնավարներուն անունները։ Հանրապետական դրօշներ պարզուեցան զանազան քաղաքներու մէջ։

ՊԱՐԷՆԱՒՈՐՄԱՆ նախարարութիւնը կը ծանուցանէ թէ յաճախորդները պարտաւոր են պահանջել որ խանութպանները կարօնին համապատասխան կշիռով տան իւրաքանչիւրին բաժինը, փոխանակ պակաս կշռելու, զանազան առարկութիւններով։ - Կերպասի տոմսին M. շարքի MJ տառ կտրօնով կրնաք 1.50 մեթր մոմլաթ գնել (մուշամպա)։ Հինգշաբթի օր Փարիզ հասան 300 եզներ, 150 խոզեր, 80 հորթեր եւ 8300 ոչխարներ։ Տագնապը սաստկացած ըլլալով եկող շաբթու սառած միս պիտի բաժնուի։

ՆՈՐ ԱԿԱԴԵՄԱԿԱՆ Ժիւլ Ռոմէնի ընդունելութիւնը կատարուեցաւ Եչ. օր։ Հռչակաւոր վիպագիրը կը յաջորդէր Ապէլ Պոնառի, եւ ըստ սովորութեան անոր ներբողականը պիտի կարդար, բայց նախկին նախարարը վտարուած ըլլալով իբրեւ դաւաճան, Ժիւլ Ռոմէն աւանդութիւնը խզեց եւ ճառ մը խօսեցաւ ի փառս ժողովրդապետութեան։

ԿԱԹՈՂ. ՊԱՏՈՒԻՐԱԿ Արտաւազդ արք.ի նախաձեռնութեամբ եւ իր հսկողութեան տակ Փարիզի կեդրոնի 8—14 տարեկան երկու սեռէ փոքրիկներու համար յառաջիկայ նոյեմբեր 14էն սկսած, ամէն հինգշաբթի, ժամը 15ին եկեղեցւոյ մէջ պիտի բացուի կրօնական դպրոց մը, առանձին ծրագրով։ Փարիզի եկեղեցւոյ հոգաբարձութիւնը ջերմօրէն կը խնդրէ յարգելի ծնողներէն անձամբ առաջնորդել իրենց զաւակները եւ արձանագրել։ Ուսէ վճարում պիտի չըլլայ։

ԿԱՊՈՑՏ ԽԱՉԻ Փորթ տ'Իթալիի մասնաճիւղը շնորհակալութեամբ ստացած է տէր եւ տիկին Կարպիս Սահակեանէ 500 ֆրանք, իրենց փոքրիկին՝ ՄԱՐԳԱՐԻՏԻ տարեդարձին առթիւ։

## ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԸ

ՓԱՐԻԶԻ ՄԷՋ.— 15 Նոյեմբեր, ժամը 8.30ին, նախկին Petit Journalի սրահը, նախագահութեամբ

**ԸՆԿԵՐ ՀՐԱՆՏ ՍԱՄՈՒԷԼԻ**

**ԿԸ ԽՕՍԻ ԸՆԿԵՐ ԳԱՍՊԱՐ ԻՓԷՔԵԱՆ**

եւ ընկերվարական կուսակցութեան ներկայացուցիչը։ Գեղարուեստական ճոխ բաժին։

×

ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ.— Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Շրջ. Կոմիտէի, մասնակցութեամբ բոլոր խումբերուն եւ Նոր Սերունդի վարչութեան եւ 9 մասնաճիւղերուն։ 17 Նոյեմբեր, Կիրակի ժամը 8.30էն մինչեւ լոյս, Brébant Marseillaisի ընդարձակ սրահին մէջ։

146 Ave. des Chartreux :

Կը խօսի ընկեր

**ԳԱՍՊԱՐ ԻՓԷՔԵԱՆ**

եւ ընկերվարական կուսակցութեան ներկայացուցիչները։

FRANCIS LAENHARDT (երեսփոխան), JEAN MASSE (անդամ ծահանգային խորհուրդի); LASSALARIÉ (նախագահ Նահ. խորհ.ի)։

Գեղարուեստական բաժնին կը մասնակցին Օր. ԾՈՎԻՆԱՐ ՏԷՐ ՊԵՏՐՈՍԵԱՆ (Լիոնի Օփերայէն), եւ յայտնի ջութակահար ՖԻԼԻՓ ԱՂԱՃԱՐԵԱՆ։ Կէս գիշերէն վերջ հայկական եւ եւրոպական պարեր ղեկավարութեամբ ՉԷՕՐԷՔՃԵԱՆ նուագախումբի, ճոխ պիւֆէ։ Մուտքը ազատ է։

×

ՎԻԷՆԻ ՄԷՋ.— 16 Նոյեմբեր շաբաթ իրիկուն, ժամը 20.30ին Քաղաքապետարանի թատրոնին մէջ։ Կը նախագահէ ընկ. Ս. ՍԻՍԼԵԱՆ (Կրընոպլէն)

**ԿԸ ԽՕՍԻ ԸՆԿԵՐ ԳԱՍՊԱՐ ԻՓԷՔԵԱՆ**

Գեղարուեստական բաժնին կը մասնակցին՝ Պ. Վարդգէս Մխիթարեան իր նուագախումբով։ եւ Օր. Մարի Տէրվիշեան (երգ)։ Պիտի պարեն սանուհիները տոհմիկ տարազներով։ Ներկայ պիտի ըլլան Փր. ընկերվարականներ։ Մուտքը ազատ է։




Le Gérant : L. KRIKORIAN

**Imprimerie DER-AGOPIAN, 17 Rue Damesme – 13e**


Օր. ԱՆԱՀԻՏ ՍԷՐՃԱՆԵԱՆ

Պ. ԽԱՉԻԿ ԱՐԱՊԵԱՆ

Նշանուած

Gagny, 3 Նոյ. 1946

Թիւրքմէնի ինքնավար շրջանին կազմակերպութեան մասին։ Արեւմտեան պետութիւնները մերժեցին խորհրդային պատուիրակութեան առաջարկած փոփոխութիւնները, մանաւանդ կառավարիչին իրաւասութեանց կրճատման մասին։ Անոնց կարծիքով, կառավարիչը, որ պիտի նշանակուի Ապահովութեան խորհուրդին կողմէ, պէտք է շատ լայն իրաւասութիւններ վայելէ։

Երէկ նորէն գաղտնի նիստ գումարուեցաւ, վերջնական համաձայնութեան մը յանգելու համար։

## Խլրտումներ Իրանի մէջ

Լոնտոնի թերթերը վրդովիչ տեղեկութիւններ կը հրատարակեն Իրանի կացութեան մասին։ Մեծ դժգոհութիւն կը տիրէ գաւառներու մէջ։ Ժողովուրդը կը գանգատի թէ երկրին եկամուտին մեծ մասը կը ծախսուի Թեհրանի վրայ, կառավարութեան պաշտօնէութեան, շէնքերու եւ քաղաքին բարեզարդութեան համար, ի վնաս գաւառի։ Մինչ Թէհրանի մէջ դպրոցները, երկրորդական վարժարանները եւ հիւանդանոցները խիստ շատ են, գաւառին մէջ հանրային կրթութիւնը եւ բժշկական խնամքը երեսի վրայ ձգուած են։

Ատրպատականի մէջ, տեղական ինքնավարութեան պահանջին հետ՝ ցեղային գիտակցութիւնը աւելի ուժեղացած է։ Ժողովուրդին մեծ մասը թրքական ծագում ունի եւ իր հիւսիսային դրացի Սովետ Ատրպատականի ալ շատ մօտիկ է։ Ատրպատականի մէջ կան նաեւ քրտական փոքրամասնութիւն մը արեւմտեան կողմէ, եւ շատ մը Հայեր քաղաքներուն մէջ։

1945ին Ատրպատականի ազգային ինքնավար կառավարութեան մը կազմութիւնը խոր տպաւորութիւն գործեց միւս գաւառներուն ժողովուրդներուն վրայ եւ Խուժիստանի մէջ ուր մեծ թիւով արաբ ժողովուրդ կայ։ Սպահանի, Ֆարսի եւ Քիւրտիստանի մէջ, ազդեցիկ խմբակցութիւններ կազմուեցան, կեդրոնական կառավարութենէն վիջումներ եւ ժառանգաշնորհներ ստանալու համար Ատրպատականի պէս։ Քիւրտերը եւ Արաբները իրենց սեփական լեզուին ճանաչումը պահանջեցին։

Գաւառական կարգ մը շրջաններու մէջ դժգոհութիւնը աւելի սաստկացած է, իբրեւ հետեւանք Ատրպատականի վայելած առաւելութեանց։

### ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԵԼԵԿՏՐԱԿԱՆ ՀՈՍԱՆՔԻ կրճատումները պիտի կը շարունակուին, օրը քանի մը անգամ։ Վերջնական ծրագիրը պիտի գործադրուի երկուշաբթի օրէն սկսեալ։ Մանրամասնութիւնները կրկին կը քննուին զանազան կազմակերպութեանց կողմէ։ Կրճատման գլխաւոր պատճառներէն մէկն ալ այն է որ նուազած է ածուխի ներածումը Ռուրէն։ Մինչեւ ինը ամիս առաջ Ֆրանսա կը ստանար ամսական 250.000 թոն, դեկտեմբերին պիտի ստանայ 86.000, իսկ երկու ամիս վերջը՝ 60.000։ Եթէ անձրեւները շարունակուին, կացութիւնը զգալապէս պիտի բարւոքի։ Թերթ մը կը գրէ թէ ելեկտրականութեան տագնապը պիտի շարունակուի մինչեւ... 1950 :—

ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ԽՈՐՀՈՒՐԴԻՆ (Բ. ժողով) ընտրութեան առթիւ, որ տեղի պիտի ունենայ յառաջիկայ կիրակի, բոլոր հոսանքները, մինչեւ անգամ Փարիզի արքեպիսկոպոսը կը յորդորեն քուէ տալ ամէն գնով։ Ժողովրդականները կ'ազդարարեն թէ Ֆրանսա պէտք է ընտրութիւն մը կատարէ իրենց եւ համայնավարութեան միջեւ։ Ինչպէս երեսփ. ընտրութեանց ատեն, այս անգամ ալ համայնավարները ասպարէզ իջած են իրենց ամբողջ ուժով, ընտրելու համար 85.000 պատուիրակները որոնք պիտի ընտրեն Հանրապետութեան խորհուրդին 315 անդամներէն 200ը :— Պ. Թորէզի յայտարարութեան համաձայն, իր կուսակցութիւնը ի հարկին պիտի օգտուի նաեւ ժողովրդականներէն, նոր դահլիճին կազմութեան ատեն։

ՄԱՀՈՒԱՆ ԴԱՏԱՊԱՐՏՈՒԵՑԱՆ P. P. F.ի (Տօրիոյի կուսակցութեան) 8 անդամներ Լիոնի մէջ։

ԱՆԳԼԻԱՅԷՆ կը հեռագրեն թէ անգլ. դեսպանը արտաքին նախարարին այցելեց, Մոսկուայի վերջին ծանուցագրին առթիւ, որ կը պահանջէր ուղղակի բանակցութիւններ կատարել Թուրքիոյ հետ։ Քաղաքական շրջանակներու մէջ կը հաւաստեն թէ Թուրքիա նորէն պիտի մերժէ, եթէ Խ. Միութիւնը պնդէ միայնին պաշտպանել Նեղուցները։

ՄՈՍԿՈՒԱՅԻ «Նոր Ժամանակներ» հանդէսը կը հերքէ այն լուրերը թէ գաղտնի քաղաք մը հաստատուած է Խ. Միութեան մէջ, «Աթոմկրատ» անունով, հիւլէական ռումբեր շինելու համար։

ԵՐՈՒՍԱՂԷՄԷՆ կը հեռագրեն թէ Հրեաներուն ազդարարուած է կառախումբ չնստիլ, որովհետեւ ահաբեկիչները նոր յարձակումներ պիտի կատարեն։ Սպառնալիքները կը շարունակուին անգլ. բանակին դէմ։ Լոնտոնի մէջ ալ արտակարգ միջոցներ ձեռք առնուած են, որպէսզի ահաբեկիչներ չհասնին։

## ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԸ

ՄԱՐՍԷԼԻ ՄԷՋ, յառաջիկայ կիրակի, 24 Նոյեմբեր։ Մանրամասնութիւնները յաջորդով։





ՏԻԿԻՆ Գ. ԱՃԷՄԵԱՆ եւ զաւակները 500 Ֆր. կը նուիրեն Աղքատախնամին, փոխան ծաղկեպսակի, Գ. Մարտիրոս Ադամեանի մահուան առթիւ։ Ստանալ «Յառաջ»էն։

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ Ե. ԳՐԻԳՈՐԵԱՆ կը ծանուցանեն իրենց երկրորդ զաւկին՝ Աննիկի ծնունդը Նոյեմբեր 10ին։ Villemomble

ՎԻԷՆ.— Մարաշի Հայր. Միութիւնը վերակազմուած է 37 անդամներով։ Վարչութեան անդամ ընտրուեցան Պ. Պ. Սուրէն Թէլպէեան (ատենապետ), Սողոմոն Թէլպէեան (ատենադպիր), Ֆէյրիատ Փարթամեան (գանձապահ), Արմենակ Զարմաքեան եւ Աբրահամ Քէլէշեան (խորհրդականներ)։ Պիտի ջանանք ամէն գնով շարունակել հայրենասիրական աշխատանքը։

## ՋՈՒԱՐԹՆՈՑ





ԱՐԺԱՆԹԻՆԷՆ Գրիգոր Քէօչկերեան կը փընտռէ հօրեղբօրորդին՝ Փանոս Քէօչկերեանը, որ Փարիզ ըլլալ կը կարծուի։ Գրել Calle Portela, 1630 Buénos-Aires։

### ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

«ՏԱՆՋՈՒԱԾՆԵՐԸ», հեղինակ Կարօ Մխիթար, վէպ իրական կեանքէ, աքսորեան օրերէն։ Կը ծախուի Տէրիկեան գրատուն Մարսէյլ եւ Վալանս, Գէորգեան Գ.ի մօտ, 98 Quai de la Verrerie, Bourg les Valence Drôme: Հեղինակի հասցէ.— 57 rue Bernard du Bois, Marseille։



Գ. ՆԻԿՈՂՈՍԵԱՆ կը փնտռէ իր ազգականներէն Տիկին Մարգարիտ Չէյթունցեանը որ Լիոն ըլլալ կը կարծուի։ Տեղեկանել Գ. Նիկողոսեանի, Camino Ariel 4805 Sayago, Montevideo։

### ՅՈՒՇԱՏԵՏՐ

ԼԻՈՆ.— Հ. Յ. Դ. Նոր Սերունդի «Սիամանթօ» խումբի դասախօսութիւնը՝ 18 Նոյ. երկուշաբթի երեկոյեան ժամը 8.30ին, 137, Rue Paul-Bert. Կը դասախօսէ ընկ. Միսաք Միրզէ։ Նիւթ՝ «Հ. Յ. Դաշնակցութիւնը եւ ազատագրական շարժումը»։

ՄԱՐՍԷՅԼ.— Սէնթ Անի Հ. Յ. Դ. Նոր Սերունդ, «Քեռի» խումբին հինգերորդ դասախօսութիւնը այս երկուշաբթի, ժամը 8ին։ Կը դասախօսէ ընկեր Արամ Արմաղանեան։ Կը հրաւիրուին ծնողներն ու բարեկամները։

ԱՆԻԷՐ ՊՈՒԱ ՔՈԼՈՄՊԻ Հ. Յ. Դ. Արամ Ենթակոմիտէի ժողովը՝ այս հինգշաբթի սովորական հաւաքատեղին։ Կարեւոր օրակարգ։

ԵՐԻՏԱՍԱՐԴ ԱՇԽԱՏԱՒՈՐ ՄԸ կը փնտռուի «Յառաջ»ի թղթատարական ճիւղին համար։

ՊՕՂՈՍ ՄԱԼԵԱՆ (Հարաւային Ամերիկայէն), կը փնտռէ հօրաքրոջ որդին Վահագն Թուրսարգիսեանը, հօրը անունը՝ Սեդրակ, մօրը Ագապի, Հաճընցի։ Տեղեկացնել Պ. Մալեանի, Y. Vicente Arcos 31777 Montevideo։















Le Gérant : L. KRIKORIAN
**Imprimerie DER-AGOPIAN, 17 Rue Damesme – 13e**

